Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 3 ՓԵՏՐՎԱՐ 1950

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։*

---

# ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵԼ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԵՎ ԱՆՊԱՐՏԻԱԿԱՆՆԵՐԻ ՍՏԱԼԻՆՅԱՆ ԲԼՈԿԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԻ ՕԳՏԻՆ

Մեր մեծ Հայրենիքով մեկ ծավալվել է
Գերագույն Սովետի ընտրությունների նախ-
ընտրական կամպանիան։ Այն տեղի է ունե-
նում հետպատերազմյան ստալինյան հըն-
գամյակը ժամկետից շուտ կատարելու, մեր
երկրում կոմունիզմի կառուցման համար
մղվող պայքարում սովետական ժողովրդի
ձեռք բերած նորանոր հաղթանակների իրա-
դրության մեջ։ Ամենուրեք տեղի են ունե-
նում բանվորների, կոլխոզնիկների, ինտելի-
գենցիայի նախընտրական ժողովներ՝ նվիր-
ված ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտա-
տության թեկնածուների առաջադրմանը։
Ընտրողները առաջադրում են կոմունիստնե-
րի և անպարտիականների ստալինյան
անխորտակելի բլոկի իրենց թեկնածուներին։

Նախընտրական կամպանիայի ներկա է-
տապում ագիտատորների առաջ ծառացած

են նոր, պատասխանատու խնդիրներ։ Ընտրողների հետ իրենց անցկացրած զրույցներում ագիտատորները պետք է պատմեն քաղաքական այն նոր, հզոր վերելքի մասին, որ առաջացել է այս օրերին։ Ամբողջ երկրով մեկ լայնորեն ծավալվել է համաժողովրդական սոցիալիստական մրցումը։ Բանվորները, կոլխոզնիկները, ինտելիգենցիան, առաջադրելով դեպուտատության թեկնածուներին, ստանձնում են կոնկրետ պարտավորություններ՝ է՛լ ավելի բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պայքարելու արդյունաբերության, գյուղատնտեսության ու կուլտուրայի նորանոր հաջողությունների համար։

Նախընտրական ժողովներում վառ կերպով դրսևորվում է սովետական մարդկանց անհուն սերն ու նվիրվածությունը դեպի բոլշևիկյան պարտիան, դեպի մեծ առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինը։

Ահա թե ինչու այս բեռկրային օրերին սովետական մարդիկ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության համաժողովրդական առաջին թեկնածու են առաջադրել մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչ ու ոգեշնչող ընկեր Ստալինին։

Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական



օկրուգի աշխատավորները, արտահայտելով սովետական միլիոնավոր մարդկանց մտքերն ու զգացմունքները, ընկեր Ստալինին ուղղված նամակում գրեցին. «Մեր ամբողջ երկրի աշխատավորները, դիմավորելով ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները, մեծագույն բերկրանքով և միահամուռ կերպով Սովետական իշխանության Գերագույն Օրգանի դեպուտատության իրենց առաջին թեկնածուն են անվանում Ձեզ, հարազատ Իոսիֆ Վիսսարիոնովիչ»։

Այս խոսքերի մեջ արտահայտված են նաև հայ ժողովրդի մտքերն ու զգացմունքները, որը միահամուռ կերպով ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության իր առաջին թեկնածուն է առաջադրել հայ ժողովրդի մեծ բարեկամ ու ազատարար ընկեր Ստալինին։ Հայաստանի աշխատավորները նախընտրական ժողովներում ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ են առաջադրել նաև մեծ Ստալինի հավատարիմ զինակիցներ ընկ. ընկ. Մոլոտովին, Մալենկովին, Բերիային, Վորոշիլովին, Միկոյանին, Անդրեևին, Կագանովիչին, Խրուշչևին, Բուլգանինին, Շվերնիկին, Կոսիգինին, Սուսլովին, Պոնոմարենկոյին։

Ռեսպուբլիկայի աշխատավորները մեր

Հայրենիքի պետական իշխանության Գերա-
գույն օրգանի պատվիրակության համար ա-
ռաջադրում են իրենց լավագույն որդիներին
ու դուստրերին։ Առաջադրված թեկնածուների
մեջ են Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի քար-
տուղարներ Գր. Հարությունյանը, Հ. Պողո-
սովը, Հայկական ՍՍՌ Մինիստրների Սո-
վետի Նախագահ Ս. Կարապետյանը, Հայ-
կական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագա-
հության Նախագահ Մ. Պապյանը, Երևանի
Պետական համալսարանի բազմավաստակ
դասախոս պրոֆեսոր Ստեփան Ներսիսյանը,
Լենինականի Տեքստիլ կոմբինատի անվանի
բանվորուհի Եվդոկիա Լիխաչևան, լենինա-
կան մեքենավար Գարեգին Աբաջյանը, Սո-
ցիալիստական Աշխատանքի Հերոս Մարիամ
Մարտիրոսյանը, Ալավերդու Պղնձաձուլա-
կան գործարանի առաջավոր բանվոր Իսա-
հակ Պապոյանը, վաստակավոր ուսուցչուհի
Կարինե Դրամբյանը և շատ ուրիշներ, որոնց
անունները լայնորեն հայտնի են ռեսպուբլի-
կայի բոլոր աշխատավորներին։ Անհրաժեշտ
է, որ ագիտատորները իրենց զրույցների ըն-
թացքում այս օրինակներով վեր հանեն, թե
ինչպես է մեր երկրում իրականացվում աշ-



խարհում ամենադեմոկրատական ընտրա-
կան սիստեմը, որը հնարավորություն է ըս-
տեղծել պետական կառավարման գործում
ներգրավելու սովետական ժողովրդի ամենա-
տարբեր խավերի ներկայացուցիչներին։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատու-
թյան թեկնածուների առաջադրումով ընտ-
րական կամպանիան թևակոխել է նոր է-
տապ։ Ագիտացիոն-պրոպագանդիստական
աշխատանքի կարևորագույն խնդիրներից
մեկը հանդիսանում է կոմունիստների և ան-
պարտիականների ստալինյան բլոկի կողմից
ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատու-
թյան համար առաջադրված թեկնածուների
օգտին մղվող ագիտացիան։ Այդ աշխատան-
քի կազմակերպման կարևորագույն կենտրո-
նը պետք է լինի ագիտպունկտը։ Ագիտ-
պունկտում ընդհանուր քաղաքական և ընտ-
րական գրականության հետ միասին հարկա-
վոր է ունենալ նաև դեպուտատության թեկ-
նածուին վերաբերող նյութեր, նրա նկարնե-
րը, համառոտ կենսագրությունը, նյութեր
նրա աշխատանքային, հասարակական-քա-
ղաքական գործունեության մասին։ Պետք է
առանձնահատուկ ուշադրություն նվիրել դե-
պուտատության թեկնածուների օգտին կա-
տարվող ագիտացիոն աշխատանքին։ Այն

չպետք է սահմանափակել միայն ագիտ-
պունկտով։ Անհրաժեշտ է օգտագործել քա-
ղաքական-մասսայական աշխատանքի բո-
լոր փորձված մեթոդներն ու ձևերը։
Հրապարակվում են ՍՍՌՄ Գերագույն Սո-
վետի դեպուտատության թեկնածուների
կենսագրական թերթիկները, ընտրվում են
վստահված անձիք, ձեռնարկություններում,
կոլխոզներում, սովխոզներում կազմակերպ-
վում են միտինգներ ու ժողովներ դեպուտա-
տության թեկնածուների հետ հանդիպումներ
ունենալու համար, դեպուտատության թեկ-
նածուները զրույցներ են ունենում ընտրող-
ների հետ ցեխերում, բրիգադաներում, տը-
ներում, հանրակացարաններում, ակումբնե-
րում։ Այդ միջոցառումները անց են կացվում
այն նպատակով, որպեսզի հնարավորին չափ
ընտրողների ավելի լայն շրջաններ ծանո-
թանան դեպուտատության իրենց թեկնածուի
հետ։
Հասկանալի է, որ այս ամբողջ աշխա-
տանքը չեն կարող կատարել միմիայն վըս-
տահված անձիք։ Նրանց պետք է օգնեն ա-
գիտատորներն ու պրոպագանդիստները։
Ագիտատորների խնդիրն է՝ հասնել այն
բանին, որ ոչ մի ընտրող չմնա առանց դե-
պուտատության թեկնածուին լավ ճանաչե-



լուս Ագիտատորը չպետք է սահմանափակվի
թեկնածուի կենսագրության սոսկ պատմու-
մով։ Նա պետք է ընտրողների առաջ լայնո-
րեն բացահայտի սովետական պետական իշ-
խանության Գերագույն օրգան ուղարկվող
ժողովրդական պատվիրակի կյանքի ուղին,
ցույց տա նրա բարոյական բարձր հատկու-
թյունները, նրա օրինակով ոգեշնչի աշխա-
տավորներին դեպի նոր հաջողությունների։
Արտադրական ցեխում պատմելով դեպու-
տատության ստախանովական թեկնածուի
մասին, կամ կոլխոզում՝ խոսելով դեպու-
տատության կոլխոզնիկ թեկնածուի կյանքի
մասին, ագիտատորը պետք է իր զրույցը
կապի ցեխի, օղակի առաջ կանգնած կոնկ-
րետ խնդիրների հետ, օգնի լիկվիդացնելու
աշխատանքում եղած թերությունները և
հասնելու նոր վերելքի։
Նախընտրական ժողովներում դեպուտա-
տության թեկնածուների հետ ունեցած հան-
դիպումների ժամանակ ընտրողները, կխո-
սեն մեր սովետական ու տնտեսական
օրգանների, առանձին գերատեսչություն-
ների և ձեռնարկությունների գործու-
նեության մասին, ցույց կտան նրանց աշ-
խատանքում եղած թերությունները և պրակ-
տիկ առաջարկություններ կմտցնեն դրանք

արագորեն վերացնելու համար։ Ագիտատոր-
ները պետք է ուշադիր ունկնդրեն թերու-
թյունների այդ առողջ քննադատությանը,
դրա մասին հաղորդեն համապատասխան
պարտիական ու սովետական օրգաններին և
հետևեն, որպեսզի իրենց ահազանգների առ-
թիվ ձեռք առնվեն միջոցներ։

Դեպուտատության յուրաքանչյուր թեկնա-
ծուի կենսագրությունն իր մեջ արտացոլում է
մեր սովետական սոցիալիստական կարգի
էությունը։

Վերցնենք, օրինակ, ՍՍՌՄ Գերագույն Սո-
վետի դեպուտատության թեկնածու, Ղափա-
նի Պղնձահանքերի բանվոր Արտեմ Անտոն-
յանին, կամ շարքային կոլխոզնիկի աստի-
ճանից մինչև Էջմիածնի շրջանի Վ. Խաթու-
նարխ գյուղի կոլխոզի նախագահի աստիճա-
նին հասած, ՍՍՌՄ երկրորդ Գումարման Գե-
րագույն Սովետի դեպուտատ Ռեբեկա Ղա-
րիբյանին, կամ ուրիշ շատերի։ Նրանց բոլո-
րի օրինակը հանդիսանում է պետական կա-
ռավարման գործում աշխատավորների լայն
մասսաներին ներգրավելու մասին լենինյան-
ստալինյան ցուցումների կենսագործման հո-
յակապ արտահայտություն։ Սովետական
հասարակ մարդկանց ուղին՝ գործարանային
դազգահից, կոլխոզային դաշտերից, դաստ-



վորման ամբիոնից մինչև պետական իշ-
խանության Գերագույն օրգանում ժողովրդի
պատվիրակի աստիճանը սիմվոլացնում է
սովետական դեմոկրատիան, մեր սովետա-
կան սոցիալիստական կարգը։

Պատմելով դեպուտատության թեկնածու-
ների կենսագրությունը, ագիտատորը պետք
է դրա հետ միասին պարզաբանի կոմու-
նիստների և անկուսակցականների ստալին-
յան բլոկի ընտրական պլատֆորմը, ցույց
տա, որ ձայն տալով այդ բլոկի թեկնածու-
ների օգտին, ՍՍՌՄ քաղաքացիները ձայն
են տալու մեր սովետական սոցիալիստա-
կան կարգի օգտին, մեր սովետական դեմոկ-
րատիայի օգտին, բոլշևիկյան պարտիայի
օգտին, կոմունիզմի կառուցման գործում
մեր ժողովրդի նոր հաղթանակների օգտին։

Կոմունիստների և անկուսակցականների
բլոկի թեկնածուների օգտին կատարվող բոլ-
շևիկյան ագիտացիան ընտրական կամպա-
նիայի հաջող անցկացման կարևոր պայման-
ներից մեկն է։ Այդ կարևոր խնդրի իրակա-
նացման մեջ մարտական ու պատվավոր դեր
ունեն մեր ագիտատորները։

—○—

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՍՏԱԼԻՆՅԱՆ ՄԵԾ ԾՐԱԳԻՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Չորս տարի առաջ, 1946 թվի փետրվարի 9-ին, ընկեր Ի. Վ. Ստալինը Մոսկվա քաղաքի Ստալինյան ընտրական օկրուգի ընտրողների նախընտրական ժողովում հանդես եկավ պատմական ճառով, որտեղ հանրագումարի բերեց Հայրենական Մեծ պատերազմի արդյունքները, գծեց բոլշևիկյան պարտիայի և սովետական ժողովրդի աշխատանքի ու պայքարի մարտական ծրագիրը, մեր երկրում կոմունիզմի կառուցման մեծ պլանը։ Ընկեր Ստալինի պատմական հաշվետվությունը ժողովրդին, մի նոր, փայլուն ավանդ հանդիսացավ մարքսիստական-լենինյան հզոր տեսության գանձարանում։ Մեր ժամանակի մեծագույն զորավար և կոմունիզմի բոլոր հաղթանակների դրոշ ընկեր Ստալինը, իրեն հատուկ հանճարի ուժով ցույց տվեց երկրորդ համաշխարհային պատերազմի ծագման պատճառները, նրա բնույթը և արդյունքները։ Սովետական հերոս ժողովուրդը, բոլշևիկյան պարտիայի ի-*



*մասսում առաջնորդությամբ, պատերազմի
ընթացքում ոչ միայն ջախջախեց գերմանա-
կան ֆաշիստներին և ճապոնական ագրե-
սորներին, աշխարհի քաղաքակրթությունը
փրկեց հիտլերյան աղտեղությունից, այլ
միաժամանակ լիովին վիժեցրեց անգլո-ա-
մերիկյան ռեակցիոն շրջանների խարդախ
պլանները, որոնց նպատակն էր՝ պատե-
րազմի ընթացքում թուլացնել դեմոկրատիա-
յի և սոցիալիզմի ուժերը։ Ընկեր Ստալինը իր
ընտրողների առջև արտասանած պատմա-
կան ճառում բացահայտեց և ցույց տվեց
սովետական ժողովրդի տարած համաշխար-
հային հաղթանակների իմաստը։ «Մեր հաղ-
թանակը,— ասում է ընկեր Ստալինը,—նը-
շանակում է, ամենից առաջ, որ հաղթեց մեր
սովետական հասարակարգը, որ սովետա-
կան հասարակարգը հաջողությամբ բռնեց
քննությունը պատերազմի կրակի մեջ և ա-
պացուցեց իր լիակատար կենսունակությու-
նը»։ Ճարճատյունով տապալվեցին թշնամի-
ների հաշիվները, որոնք սև ագռավի պես
նախագուշակում էին սովետական պետու-
թյան կործանումը։ Պատերազմի ամբողջ
ընթացքը ցույց տվեց, որ սովետական հա-
սարակարգը ժողովրդի ընդերքից աճած և
նրա հզոր օժանդակությունը վայելող իսկա-*

կան հասարակարգ է, այն հասարակու-
թյան կազմակերպման միանգամայն կեն-
սունակ և կայուն ձև է։ «Մեր հաղթանա-
կը,— ասում է ընկեր Ստալինը,— նշանա-
կում է, երկրորդ, որ հաղթեց մեր սովետա-
կան պետական կարգը, որ մեր սովետական
բազմազգ պետությունը դիմացավ պատե-
րազմի բոլոր փորձություններին և ապացու-
ցեց իր կենսունակությունը»։

Սովետական Միության Հայրենական Մեծ
պատերազմը նոր ուժով հաստատեց, որ սո-
վետական պետական կարգը հանդիսանում է
սոցիալիստական բազմազգ պետության օրի-
նակ, որտեղ ազգային հարցը և սոցիալիստա-
կան ազգերի համագործակցության պրոբլե-
մը լուծված է ավելի լավ, ավելի հիմուտ,
քան ամեն մի այլ բազմազգ պետության
մեջ։ «Մեր հաղթանակը,— ասում է ընկեր
Ստալինը,— նշանակում է, երրորդ, որ հաղ-
թեցին սովետական զինված ուժերը, հաղթեց
մեր Կարմիր Բանակը...»։ Սովետական Զին-
ված ուժերը հերոսաբար դիմացան բոլոր
փորձություններին, պատվով կատարեցին
իրենց ազատագրական մեծ միսիան՝ գլխո-
վին ջախջախեցին թշնամիների բանակնե-
րը, պահպանեցին ոչ միայն մեր Հայրենիքի
ազատությունն ու անկախությունը, այլև եղ-



բայրական օգնության ձեռք մեկնեցին Եվրո-
պայի մի շարք երկրների ժողովուրդներին
իրենց ազատության և անկախության նվաճ-
ման գործում։

Հայրենական Մեծ պատերազմում մեր
պատմական հաղթանակի ապահովումը
պայմանավորված էր Լենինի-Ստալինի պար-
տիայի իմաստուն քաղաքականությամբ,
ընկեր Ստալինի հանճարով։ Լենինյան-
ստալինյան հեռատես քաղաքականության
շնորհիվ մեր երկիրը, պատերազմից առաջ
պատրաստվել էր ակտիվ պաշտպանության՝
իրականացվել էր ՍՍՌՄ-ի ինդուստրացման
և գյուղի կոլեկտիվացման քաղաքականու-
թյունը։ Պատերազմը հանրագումարի բերեց
բոլշևիկյան պարտիայի նախապատերազմ-
յան ամբողջ գործունեությունը, ցույց տվեց,
թե ինչպիսի վճռական նշանակություն ունե-
ցան ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության
վերականգնման ու զարգացման ստալինյան
հնգամյակները։

Ընկեր Ստալինն իր պատմական հաշվետ-
վության մեջ շարադրեց հետպատերազմյան
նոր հնգամյակի մարտական ծրագիրը և կո-
մունիստական պարտիայի ավելի երկարատև
ժամանակամիջոցի պլանները։ Կոմունիզմի
կառուցման ճանապարհին խոշոր քայլ է

ճանդիսանում նոր հնգամյա պլանը։ Ընկեր
Ստալինը նշել է, որ «նոր հնգամյա պլանի
հիմնական խնդիրներն են՝ վերականգնել
երկրի տուժած շրջանները, վերականգնել
արդյունաբերության և գյուղատնտեսության
նախապատերազմյան մակարդակը և այնու-
հետև քիչ թե շատ զգալի չափով գերազան-
ցել այդ մակարդակը»։

Սովետական ժողովուրդը, զինված սիրելի
առաջնորդի հանճարեղ ցուցումներով, հա-
ջողությամբ իրականացնում է ստալինյան
հնգամյա պլանը, օր-օրին բազմապատկում
ՍՍՌՄ-ի ռազմա-տնտեսական հզորությունը։
Սովետական հայրենասերների հերոսական
աշխատանքով ժամկետից շուտ կատարվում
է նոր հնգամյա պլանը։ Հետպատերազմյան
հնգամյակի անցած չորս տարիներին մեր
երկրում կառուցվել, վերականգնվել և գոր-
ծարկվել է 5200 պետական արդյունաբերա-
կան ձեռնարկություն։ 1949 թվին մեր երկրի
արդյունաբերությունը բարձրացված պլանը
ամբողջովին վերցրած կատարեց 103 տոկո-
սով։ ՍՍՌՄ արդյունաբերական ամբողջ ար-
տադրանքի ծավալը 1949 թվին նախապա-
տերազմյան՝ 1940 թվի արդյունաբերությանը
գերազանցեց 41 տոկոսով, իսկ 1949 թվի
չորրորդ եռամսյակի արդյունաբերական ար-



տադրանքի ընդհանուր մակարդակը նախա-
պատերազմյան մակարդակից գերազանցեց
53 տոկոսով։

Միանգամայն այլ պատկեր գոյություն ու-
նի կապիտալիստական երկրներում։ ԱՄՆ-ի
արդյունաբերության արտադրանքը 1949 թվի
հուլիսին պատերազմի տարիների համեմա-
տությամբ իջել է 65 տոկոսով, իսկ 1948
թվի հոկտեմբերից հետո կրճատվել է 22
տոկոսով։

Խոշոր նվաճումների են հասել մեր երկրի
սոցիալիստական գյուղատնտեսության ֆը-
րոնտի աշխատողները։ ՍՍՌՄ-ում հաջողու-
թյամբ լուծված է հացահատիկային պրոբ-
լեմը։ Իրականացնելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի
Փետրվարյան պլենումի որոշումը, 1949
թվին գյուղատնտեսական արտադրանքը
հասցվեց նախապատերազմյան՝ 1940 թվի
մակարդակին, ստացվեց 7 միլիարդ 600 մի-
լիոն փութ հացահատիկ, որը գրեթե հավա-
սար է նոր հնգամյակի վերջին տարվա հա-
մար նախատեսված բերքի մակարդակին։ Ի-
րականացվում է բնության վերափոխման
ստալինյան ծրագիրը և անասնաբուծության
զարգացման եռամյա պլանը։ Ստալինյան
դարաշրջանի մարդիկ վերափոխում են բնու-
թյունը, այն հպատակեցնում իրենց։ Դա կո-

մունիզմի մեծ հատկանիշներից մեկն է։ Աճում է ժողովրդի նյութական և կուլտուրական կենսամակարդակը։ Դրա վառ արտահայտություններից մեկը մթերային և արդյունաբերական ապրանքների քարտային սիստեմի վերացումն էր և դրամական ռեֆորմի անցկացումը մեր երկրում։ Օրավուր ծաղկում և բարգավաճում են սովետական գիտությունը, Սովետական Միության ժողովուրդների ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։ Սովետական գիտության ու տեխնիկայի բուռն աճի վառ ապացույցներից է այն փաստը, որ դեռևս 1947 թվից Սովետական Միությունը տիրապետել է ատոմային զենքին։

Ընկեր Ստալինն իր պատմական ճառում նշել է, թե «ինչ վերաբերում է ավելի երկարատև ժամանակամիջոցի պլաններին, ապա պարտիան մտադիր է կազմակերպել ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելք, որը մեզ հնարավորություն տար մեր արդյունաբերության մակարդակը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ բարձրացնելու, օրինակ, երեք անգամ։ Անհրաժեշտ է՝ մենք հասնենք այն բանին, որ մեր արդյունաբերությունը կարողանա տարեկան արտադրել մոտ 50 միլիոն տոննա



չուգուն, մոտ 60 միլիոն տոննա պողպատ, մոտ 500 միլիոն տոննա ածուխ, մոտ 60 միլիոն տոննա նավթ։ Այդ պայմանով միայն կարելի է համարել, որ մեր Հայրենիքն ապահովված կլինի ամեն տեսակ պատահականություններից։ Դրա համար կպահանջվի գուցե երեք նոր հնգամյակ, եթե ոչ ավելի։ Բայց այդ բանը կարելի է անել, և մենք պետք է այդ անենք»։

Մեր երկրի միլիոնավոր աշխատավորներ, կատարելով ընկեր Ստալինի իմաստուն ցուցումները, բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ օր-օրին ծավալում են համաժողովրդական ստեղծարար սոցիալիստական մրցություն, լիովին օգտագործում ներքին ռեզերվները, արագացնում շրջանառու միջոցների շրջանառությունը, բարձրացնում թողարկվող արտադրանքի որակը և իջեցնում ինքնարժեքը։

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությունում հաղթական սոցիալիստական շինարարության գլխավոր հանրագումարն այն է,— նշել է ընկեր Ստալինը, — որ մեր երկրի բանվոր դասակարգը, ոչնչացնելով մարդու շահագործումը մարդու կողմից և հաստատելով սոցիալիստական

հասարակարգ, ամբողջ աշխարհին ապացուցեց իր գործի արդարությունը։

Հսկայական են կոմունիզմ կառուցող սովետական հերոս ժողովրդի պատմական ծառայությունները մարդկության առջև։

Աճում և ամրապնդվում են կոմունիստական շարժումը, դեմոկրատիայի, խաղաղության և սոցիալիզմի ճակատը։ Ներկայումս արտասահմանյան կոմունիստական և միավորված բանվորական պարտիաները իրենց շարքերում ունեն ավելի քան քսան միլիոն մարդ, որոնք գլխավորում են աշխատավոր մարդկության պայքարը խաղաղության ու սոցիալիզմի համար։ Սովետական Միության կողմից գլխավորվող խաղաղության կողմնակիցների ճակատը իր շարքերում ընդգրկում է խաղաղության համար ակտիվորեն մարտնչող 600 միլիոն մարդ։ Սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնող մեր երկիրը ոգեշնչող օրինակ է հանդիսանում ամբողջ աշխարհի ճնշված ու հարստահարված ժողովուրդների համար։ Սոցիալիզմի և դեմոկրատիայի ճակատի հաջողությունները ավելի են գազազեցնում իմպերիալիստներին, որոնք անգլո-ամերիկյան իմպերիալիզմի գլխավորությամբ նոր պատերազմ են հրահրում Սովետական Միու-



թյան և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։ Ամերիկայի Միացյալ Նահանգները և Եվրոպայի մարշալլականացված երկրները տնտեսական և կուլտուրական անկում են ապրում։ Ամերիկայի Միացյալ Նահանգներում, Անգլիայում և այլ կապիտալիստական երկրներում աճում է նոր տնտեսական ճգնաժամ, որը բազմաթիվ աղետներ, սով ու աղքատություն է բերում տասնյակ միլիոնավոր աշխատավորների համար։ Կապիտալիստական երկրներում գործազուրկների և կիսագործազուրկների թիվը հասնում է 40 միլիոնի։

***

Կոմունիզմի կառուցման ստալինյան մեծ պլանը մեր երկրում գործողության մեջ է։ Այն իրականացվում է հաջողությամբ։

Ընկեր Ստալինի պատմական ճառի չորրորդ տարեդարձը զուգադիպում է մեր երկրի բարձրագույն օրգանի՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի նախընտրական կամպանիային։ Ներկայումս մեր անծայրածիր երկրի բոլոր մասերում եռանդուն աշխատանք է ծավալված Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստվելու և այն բոլշևիկորեն անցկացնելու համար։

Գերագույն Սովետի ընտրական կամպանիան թևակոխել է նոր, ավելի պատասխանատու ժամանակաշրջան։ Աշխատավորներն իրենց նախընտրական ժողովներում դեպուտատության թեկնածուներ առաջադրեցին մեր Հայրենիքի արժանավոր զավակներին։ Ամենուրեք նախընտրական ժողովներում աշխատավորները առաջինն առաջադրում էին Լենինի անմահ գործի շարունակող ընկեր Ստալինի թեկնածությունը։ Ընկեր Ստալինը սովետական ժողովրդի դեպուտատության համաժողովրդական առաջին թեկնածուն է։

Սովետական մարդիկ մեծ բերկրանքով նըշելով ընկեր Ստալինի ծրագրային ճառի չորրորդ տարեդարձը, կրկին անգամ վերհիշում են սիրելի առաջնորդի ցուցումներն այն մասին, թե «ընտրական կամպանիան՝ ընտրողների դատն է կոմունիստական պարտիայի նկատմամբ..., իսկ ընտրությունների արդյունքները նշանակելու են ընտրողների դատավճիռ»։

Գերագույն Սովետի առաջիկա ընտրությունները հանդիսանալու են կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի ուժի և կենսունակության մի նոր ստուգատես։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ պար-



տիան անպարտելի է մասսաների հետ ունեցած իր կապերով, որ կոմունիստները ոչ միայն պետք է սովորեցնեն անպարտիականներին, այլև սովորեն նրանցից, զգայուն կերպով ունկնդրեն մասսաների ձայնին։ Կարևորն այն է, որ մեր երկրում և՛ կոմունիստները և՛ անպարտիականները կերտում են միևնույն ընդհանուր գործը և նրանց բլոկը միանգամայն բնական ու կենսական է։

Սովետական մարդիկ, տոգորված մի միասնական կամքով, այս տարվա մարտի 12-ի համաժողովրդական տոնի օրը մոտենալով քվեատուփերին՝ մեկ մարդու պես ձայն կտան կոմունիստների և անպարտիականների ստալինյան բլոկի թեկնածուների օգտին. ձայն կտան համաժողովրդական առաջին թեկնածու ընկեր Ստալինի օգտին, մեր ուրախ և երջանիկ կյանքի օգտին։

Բոլշևիկյան պարտիայի և ընկեր Ստալինի իմաստուն առաջնորդությամբ սովետական ժողովուրդը վստահորեն ընթանում է դեպի կոմունիզմի լուսաշող գագաթները։

—○—

## ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԸ

*Փետրվարի 4-ից, մեր երկրի քաղաքներում և գյուղերում սկսվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուների առաջադրումը։ Սովետական ժողովուրդը միահամուռ կերպով, որպես Գերագույն Սովետի դեպուտատության առաջին թեկնածու առաջադրեց մեր բոլոր հաղթանակների ոգեշընչող ու կազմակերպիչ, սիրելի առաջնորդ ԻՈՍԻՖ ՎԻՍՍԱՐԻՈՆՈՎԻՉ ՍՏԱԼԻՆԻՆ։*

*Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները նախընտրական ժողովներում առաջինը առաջադրելով ընկեր Ստալինի թեկնածությունը, իրենց անսահման նվիրվածությունն են արտահայտում Լենինի-Ստալինի մեծ պարտիային, հարազատ Ստալինին։ Երբեմնի տանջված ու բազմաչարչար հայ ժողովուրդը իր գոյության, իր պետականության, իր այսօրվա ծաղկած տնտեսության ու կուլտուրայի համար պարտական է մեծ Ստալինի հանճարին։*

*Ընկեր Ստալինին ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջա-*



*դրել Երևանի Կիրովի անվան գործարանի բանվորներն ու ծառայողները։ Կիրովցիները փայլուն հաջողություններով են դիմավորում ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունները։ Գործարանը 1949 թվի արտադրական պլանը կատարել է 109,3 տոկոսով։ Հումքի և օժանդակ նյութերի խնայողության, ինքնարժեքի իջեցման շնորհիվ գործարանն ավելի քան 53 միլիոն ռուբլու օգուտ է տվել պետությանը։ 1949 թվի 4-րդ եռամսյակում տեխնիկատնտեսական բարձր ցուցանիշներ ձեռք բերելու համար գործարանը Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ գրավել է առաջին տեղը։*

*Հավաքվելով նախընտրական ժողովի և միահամուռ կերպով առաջադրելով ընկեր Ստալինի թեկնածությունը, Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը նորանոր պարտավորություններ վերցրեց՝ ի պատիվ ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը և մարտի 12-ին դեպի քվեատուփերը գնալ արտադրական նոր նվաճումներով։*

*Ընկեր Ստալինին ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրել Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի կոլեկտիվը, որը իր նախընտրական*

ժողովին էր եկել արտադրական խոշոր հաղթանակ ձեռք բերած։ 1949 թվի չորրորդ եռամսյակի պլանները բոլոր ցուցանիշներով կատարելու համար գործարանը արժանացել է Համամիութենական առաջին կարգի մրցանակի։

Մեծագույն խանդավառությամբ ընկեր Ստալինին ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջադրել Լենինականի, Կիրովականի արդյունաբերական և տրանսպորտի ձեռնարկությունների, հիմնարկությունների, ուսումնական հաստատությունների աշխատավորները։

Բոլշևիկների պարտիայի, Մեծ Ստալինի ղեկավարությամբ հայ գյուղը դուրս եկավ իր դարավոր հետամնացությունից և բռնեց կոլխոզային ունևոր, պայծառ կյանքի ուղին։ Հայ գյուղացին այսօր սովետական առաջավոր ագրոտեխնիկայով, գյուղատնտեսական նորագույն մեքենաներով զինված հաստատ քայլերով ընթանում է դեպի է՛լ ավելի պայծառ ապագան՝ դեպի կոմունիզմ։ Ահա թե ինչու ռեսպուբլիկայի կոլխոզային աշխատավորությունը միահամուռ կերպով որպես ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության առաջին թեկնածու առաջադրում է ընկեր Ստալինին։



***

Հայ ժողովուրդը մեծ խանդավառությամբ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածուներ է առաջադրել ընկեր Ստալինի մերձավորագույն զինակիցներին, բոլշևիկների պարտիայի և սովետական կառավարության ականավոր գործիչներին՝ ընկերներ Վ. Մ. Մոլոտովին, Գ. Մ. Մալենկովին, Լ. Պ. Բերիային, Կ. Ե. Վորոշիլովին, Ա. Ի. Միկոյանին, Լ. Մ. Կագանովիչին, Ա. Ա. Անդրեևին, Ն. Ս. Խրուշչևին, Ն. Ա. Բուլգանինին, Ն. Մ. Շվերնիկին, Ա. Ն. Կոսիգինին, Մ. Ա. Սուսլովին, Պ. Կ. Պոնոմարենկոյին։

Երեք տարի առաջ Երևանի Մոլոտովյան ընտրական օկրուգի աշխատավորները իրենց ձայնը տվին մեծ Ստալինի հավատարիմ զինակից Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովին, նրան միահամուռ կերպով ընտրելով Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ։

Օկրուգի աշխատավորները մեծ խանդավառությամբ ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջադրել ընկեր ՎՅԱՉԵՍԼԱՎ ՄԻԽԱՅԼՈՎԻՉ ՄՈԼՈՏՈՎԻՆ։ Ժողովներում և միտինգներում ունեցած իրենց ելույթներում աշխատավորները խոսում են մեր երկրի հզորության բազմապատկման,

նրա միջազգային դիրքերի ամրապնդման գործում ընկեր Մոլոտովի կատարած աչքի ընկնող ծառայությունների մասին։

Երևանի Երկաթուղային հանգույցի աշխատողների նախընտրական ժողովում ունեցած իր ելույթում լոկոմոտիվային դեպոյի մեքենավար-հրահանգիչ ընկ. Խ. Սիմոնյանը ասաց.

— Ես ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու եմ առաջադրում մեծ Ստալինի հավատարիմ զինակից, ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահի տեղակալ Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովին։ Ընկեր Մոլոտովը մեծ ծառայություն է մատուցել մեր Հայրենիքին ինչպես խաղաղ շինարարության ժամանակ, այնպես էլ պատերազմի ծանր տարիներին։ Ընկեր Մոլոտովի կյանքն ու գործունեությունը ժողովրդի գործին ծառայելու պայծառ օրինակ է. նա վաստակել է մեր երկրի բոլոր աշխատավորների սերն ու խոր հարգանքը։ Նա ոչ մի ջանք չի խնայում մեր երկրի ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի ծաղկման համար։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության համար ընկ. Վ. Մ. Մոլոտովի թեկնածությունն առաջադրել են նաև Երևանի և Լենինականի ընտրական օկրուգների աշխատավորները։



Սովետական ժողովրդի հոյակապ հաղթանակների մեջ, որ ձեռք են բերված ընկեր Ստալինի առաջնորդությամբ, մեծ են ԳԵՈՐԳԻ ՄԱՔՍԻՄԻԼԻԱՆՈՎԻՉ ՄԱԼԵՆԿՈՎԻ, մեր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Քարտուղարի և ՍՍՌ Միության Մինիստրների Սովետի Նախագահի տեղակալի, լենինյան-ստալինյան տիպի քաղաքական գործչի մատուցած ծառայությունները։ Ընկեր Մալենկովը մեծ Ստալինի հավատարիմ զինակիցն է, բոլշևիկյան պարտիայի և սովետական ժողովրդի արժանավոր զավակը։

Հայ ժողովուրդը, որպես ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու է առաջադրել ընկեր Գեորգի Մաքսիմիլիանովիչ Մալենկովին։ Ընկ. Գ. Մ. Մալենկովի թեկնածությունը մեծագույն խանդավառությամբ առաջադրել են Արթիկի շրջանի բանվորների, ծառայողների, կոլխոզնիկների և ինտելիգենցիայի նախընտրական ժողովները՝ Արթիկի ընտրական օկրուգում քվեարկվելու համար, Արտաշատի շրջանի աշխատավորները՝ Արտաշատի ընտրական օկրուգում քվեարկվելու համար։

***

Հայ ժողովրդի թեկնածուների թվումն է մեծ Ստալինի հավատարիմ զինակից և աշակերտ, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահի տեղակալ ընկեր ԼԱՎՐԵՆՏԻ ՊԱՎԼՈՎԻՉ ԲԵՐԻԱՆ։

Ընկեր Լ. Պ. Բերիայի թեկնածությունը ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրությունների Ամասիայի ընտրական օկրուգում քվեարկվելու համար առաջադրել են Ամասիայի շրջանի աշխատավորները։ Շուրաբաթ գյուղի աշխատավորների նախընտրական ժողովում կոլխոզնիկ ընկ. Ք. Մահմեդովն ասաց.

— Ընկեր Բերիան երկար տարիներ ղեկավարել է Անդրկովկասի բոլշևիկների կազմակերպությունը և անդուլ ճերպով աշխատել է Անդրկովկասյան ռեսպուբլիկաների ամրապնդման համար։ Ընկեր Բերիան լենինյանստալինյան տիպի գործիչ է։ Նա մեծ աշխատանք է կատարում սովետական պետությունն ամրապնդելու, մեր երկրի ժողովրդական տնտեսության ընդհանուր վերելք ստեղծելու համար։ Ես ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու եմ առաջադրում ընկեր Լավրենտի Պավլովիչ Բերիային,— ժողովականների բուռն ծափահարու-



թյունների տակ իր խոսքն ավարտում է ընկ. Ք. Մահմեդովը։

Ընկեր Լ. Պ. Բերիային որպես ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջադրել նաև Արթիկի շրջանի, Լենինականի, Իջևանի շրջանի, Բերիայի շրջանի աշխատավորները։

***

Հայաստանի աշխատավորները նախընտրական ժողովներում անսահման սիրով ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու են առաջադրում մեծ Ստալինի հավատարիմ զինակից, հայ ժողովրդի արժանավոր զավակ ԱՆԱՍՏԱՍ ԻՎԱՆՈՎԻՉ ՄԻԿՈՅԱՆԻՆ։ Ընկեր Միկոյանը դեռ պատանեկան հասակից կանգնել է Լենինի-Ստալինի պարտիայի դրոշի ներքո և իր ամբողջ ուժն ու եռանդը նվիրել է մեր երկրի ծաղկման ու բարգավաճման գործին։

Երևանի էլեկտրամեքենաշինական գործարանի աշխատողների նախընտրական ժողովում փականագործ ընկ. Ա. Աղբալյանն ասաց.

— Ես ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգությունների Սովետի դեպուտատության թեկնածու եմ առաջադրում ընկեր Ստալինի

հավատարիմ զինակից, հայ ժողովրդի արժանավոր զավակ, բոլշևիկյան պարտիայի, սովետական պետության ականավոր գործիչ ընկեր Անաստաս Իվանովիչ Միկոյանին։ Ընկեր Միկոյանին սիրում և հարգում են մեր երկրի աշխատավորները։ Անհունորեն նվիրված Լենինի-Ստալինի մեծ պարտիային, ընկեր Միկոյանը իր ամբողջ կյանքն ու գործունեությունը նվիրաբերել է ժողովրդի գործի համար, մեր երկրում կոմունիզմի կառուցման համար։ Ընկեր Միկոյանին մենք երրորդ անգամ ենք առաջադրում որպես ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության թեկնածու։ Որպես ժողովրդի ընտրյալ, ընկեր Միկոյանը միշտ և ամենուրեք արդարացրել է իրեն։ Մենք մեկ մարդու պես ձայն կտանք ընկեր Անաստաս Իվանովիչ Միկոյանի օգտին։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատության համար ընկ. Ա. Ի. Միկոյանի թեկնածությունը առաջադրել են Երևանի Ստալինյան ընտրական օկրուգի, Ալավերդու ընտրական օկրուգի, Էջմիածնի ընտրական օկրուգի, Միկոյանի ընտրական օկրուգի աշխատավորները։

—○—



## № 33/33 ԸՆՏՐԱԿԱՆ ՏԵՂԱՄԱՍԻ ԱԳԻՏՊՈՒՆԿՏՈՒՄ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Ազգություն-
ների Սովետի ընտրությունների Երևանի
Ստալինյան ռայոնի № 301 ընտրական օկ-
րուգի № 33/33 տեղամասի ագիտպունկտը
տեղավորված է Ս. Մ. Կիրովի անվան գոր-
ծարանի երրորդ մասի շենքերից մեկում։
Շենքի ճակատին փակցված է ընկեր Ստալինի
մեծադիր նկարը, որի շուրջը փողփողում են
ալ դրոշակները։

Ագիտպունկտը, որի ղեկավարն է ընկ. Մ.
Ղազարյանը, կազմակերպվել է ՍՍՌՄ Գե-
րագույն Սովետի ընտրությունների նախա-
պատրաստությանն սկսվելու առաջին օրե-
րին և արդեն զգալի աշխատանք է կատարել
ընտրողների մեջ։ Ագիտատորներին անհրա-
ժեշտ ղեկավարություն և ցուցումներ տալու,
ընտրողների մեջ ագիտացիոն-մասսայական
աշխատանքը լավագույն ձևով կազմակեր-
պելու համար, ագիտպունկտի աշխատողնե-
րը, ագիտատորների մասնակցությամբ կազ-

մել են աշխատանքի օրացուցային պլան։ Ըստ այդ պլանի յուրաքանչյուր ագիտատորի հայտնի են նրա զրույցների օրերը և այն հարցերը, որոնց շուրջը նա պետք է անցկացնի իր զրույցները։ Յուրաքանչյուր ագիտատոր, գալով ագիտպունկտը, անհրաժեշտ ցուցումներ է ստանում իր զրույցների վերաբերյալ, այնտեղ նրա տրամադրության տակ է դրված ընտրություններին վերաբերող անհրաժեշտ գրականություն, թարմ թերթեր և զանազան նյութեր։

Այսպես, ագիտատորներ Լ. Ջատինյանը, Մ. Պապյանը, Ս. Բարսեղյանը, Հ. Հովհաննիսյանը, Մ. Մովսիսյանը, Ս. Հայրապետյանը եկան ագիտպունկտը և խնդրեցին իրենց օժանդակ նյութեր տալ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1949 թվի պետական պլանի կատարման արդյունքների մասին զրույց անցկացնելու համար։ Ագիտատորների պահանջը բավարարվեց։ Նրանք միաժամանակ անհրաժեշտ տեղեկություններ ըստացան ժողովրդական դեմոկրատիայի երկրների տնտեսական վերելքի վերաբերյալ, կապիտալիստական երկրներում օրավուր աճող տնտեսական ճգնաժամի և նրա սարսափելի հետևանքների վերաբերյալ։



Ագիտատորներից մի քանիսը բուրժուական «դեմոկրատիայի» նկատմամբ սովետական դեմոկրատիայի ունեցած առավելության մասին իրենց անցկացրած զրույցների ժամանակ կարդացին մամուլում հրապարակված ամերիկյան հայտնի գրող Մարկ Տվենի «Ինչպես ինձ նահանգապետ ընտրեցին» պատմվածքը, որտեղ ցույց է տրված կապիտալիստական Ամերիկայի կեղծ դեմոկրատիայի ամբողջ էությունը։ Այդ զրույցներն անցան աշխույժ և հետաքրքիր։

№ 33/33 տեղամասի ագիտպունկտը, որը բաց է առավոտվա ժամը 10-ից մինչև երեկոյան ժամը 10-ը, ընտրողների սիրելի վայրն է։ Նրանք այնտեղ պատասխան են ստանում իրենց հետաքրքրող հարցերին, կարդում են թարմ թերթեր, նրանց համար կազմակերպվում են զրույցներ, ռադիո-ունկնդրումներ։ Ագիտպունկտում ընտրողների համար դասախոսություններ են կարդացվել «Ընտրողների առաջ ընկեր Ստալինի 1946 թվի փետրվարի 9-ի արտասանած պատմական ճառի 4-րդ տարեդարձը» և «ՍՍՌՄ-ի ընտրություններն ամենադեմոկրատականն են աշխարհում» թեմաների շուրջը։ Ագիտպունկտը ընտրողների հա-

ժար կազմակերպել է նաև «Բեռլինի անկումը» կինոֆիլմի կոլեկտիվ դիտում։

Բովանդակալից և հետաքրքիր է ագիտպունկտի լույս ընծայած պատի թերթը, որը նվիրված է Գերագույն Սովետի ընտրությունների նախապատրաստության հարցերին։ Թերթն ունի իր՝ «Ստալինյան Կոնստիտուցիայի դրոշի ներքո» վերնագիրը կրող առաջնորդող հոդվածը. «Մեր գործարանը» թղթակցության մեջ պատմվում է Ս. Մ. Կիրովի անվան գործարանի ձեռք բերած արտադրական հաջողությունների մասին, «Նոր տեղամաս, նոր մարդիկ» վերնագիրը կրող թղթակցության մեջ պատմվում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի վերջին ընտրություններից հետո անցած ժամանակվա ընթացքում գործարանի երրորդ մասի մոտ կառուցված նոր ավանի, նրա բնակիչների ապահով կյանքի մասին և ընտրություններին վերաբերող այլ թղթակցություններ։

№ 33/33 տեղամասի ագիտպունկտը դարձել է ընտրողների մեջ կատարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքի կենտրոն։

Գ. ԱՐԵՎՅԱՆ

—○—

**ԿՈՆՍՏԻՏՈՒՑԻԱ**

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐՆ ՈՒ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հաղթանակած սոցիալիզմի երկրի Ստալինյան Կոնստիտուցիայում ոսկյա տառերով են գրված սովետական քաղաքացիների իրավունքներն ու պարտականությունները։ ՍՍՌՄ Կոնստիտուցիան սովետական քաղաքացիների համար ապահովել է այնպիսի իրավունքներ ու ազատություններ, ինչպիսիք չկան և չեն կարող լինել իմպերիալիստական որևէ երկրում։

Ստալինյան Կոնստիտուցիայով ամրապնդված է մեր երկրի բոլոր քաղաքացիների իրավահավասարությունը, անկախ նրանց սեռից, ռասայից և ազգությունից։ Դա մարդկության ամենախոշոր սոցիալական նվաճումներից մեկն է։ ՍՍՌՄ Կոնստիտուցիան սովետական քաղաքացիների իրավունքների և ազատությունների ոչ մի սահմանափակում չի նախատեսում։ Սովետա-

կան քաղաքացիների համար Կոնստիտուցիան ապահովում է բոլոր միջոցներն ու պայմանները՝ կենսագործելու իրենց իրավունքներն ու քաղաքական ազատությունները։

«Ո՛չ թե գույքային դրությունը,— ասում է ընկեր Ստալինը,— ոչ թե ազգային ծագումը, ոչ թե սեռը, ոչ թե պաշտոնեական դրությունը, այլ յուրաքանչյուր քաղաքացու անձնական ընդունակություններն ու անձնական աշխատանքն են որոշում նրա դիրքը հասարակության մեջ»։

18 տարին լրացրած սովետական բոլոր քաղաքացիները, բացառությամբ խելագարներից ու դատարանով ձայնի իրավունքից զրկվածներից, իրավահավասար կերպով կարող են մասնակցել ՍՍՌՄ իշխանության օրգանների ընտրություններին։

Սովետական իշխանությունը ազատագրեց կնոջը և նրան տղամարդուն հավասար իրավունքներ տվեց։ Կանայք ՍՍՌՄ-ում կարևոր դեր են խաղում պետության կառավարման գործում։ 277 կանայք ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են, մոտ կես միլիոն կին տեղական Սովետների դեպուտատներ են։

Սովետական բազմազգ ժողովուրդների իրա-



վահավասարության փայլուն ապացույցն է մեր երկրի բոլոր ազգերի տնտեսական և կուլտուրական հզոր վերելքը, նրանց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի բուռն ծաղկումը։

Միանգամայն այլ է պատկերը կապիտալիստական երկրներում։ Բուրժուական երկրների կոնստիտուցիաները, ձևականորեն հռչակելով բոլոր քաղաքացիների իրավահավասարություն, քաղաքացիական ազատություններ, հենց տեղն ու տեղը այդ իրավունքները սահմանափակում են բազմաթիվ վերապահումներով, գույքային, նստակեցության, տարիքային և այլ ցենզերով։

Թե ինչի է հավասար «ընդհանուր» ընտրական իրավունքը, օրինակ, ԱՄՆ-ում և ինչպես են դրանից օգտվում ամերիկյան քաղաքացիները, այդ երևում է հետևյալ փաստից։ Եթե ՍՍՌՄ-ում 1946 թվին Գերագույն Սովետի ընտրություններին մասնակցեց չափահաս ազգաբնակության 99,8 տոկոսը, ապա ԱՄՆ-ի պրեզիդենտական վերջին ընտրություններին մասնակցեց ընտրողների մոտ կեսը։

Ստալինյան Կոնստիտուցիան սովետական քաղաքացիներին ապահովում է երաշխավորված աշխատանքի իրավունք։ Սովետա-

կան քաղաքացիները չգիտեն թե ինչ է գործազրկությունը, այն ժամանակ, երբ կապիտալիստական երկրներում 40 միլիոն մարդ տառապում է գործազրկության ճիրաններում։

Աշխատանքի իրավունքը մեր երկրում ապահովված է ժողովրդական տնտեսության սոցիալիստական կազմակերպմամբ, սովետական հասարակության արտադրողական ուժերի անշեղ աճմամբ, տնտեսական ճգնաժամերի հնարավորության վերացումով և գործազրկության լիկվիդացիայով։ Մեր երկրում բանվորների և ծառայողների թիվը տարեց-տարի ավելանում է։ 1949 թվին այն 15 տոկոսով գերազանցեց նախապատերազմյան 1940 թվի մակարդակը։ Միայն 1949 թվին արհեստագործական ու երկաթուղային ուսումնարանները և ֆաբրիկա-գործարանային ուսուցման դպրոցները ավարտեցին և ուղարկվեցին արդյունաբերության, շինարարության մեջ և տրանսպորտում աշխատելու երիտասարդ, որակյալ 723 հազար բանվոր։

Ստալինյան Կոնստիտուցիան սովետական քաղաքացիների համար ապահովում է հանգստի իրավունք։ Այն ապահովված է նրանով, որ աշխատավորները իրենք են որո-



շում աշխատանքային ժամանակի տևողության, հանգստի հարցերը։ Մեր երկրում սահմանված է աշխարհում ամենակարճ աշխատանքային օրը, բանվորների և ծառայողների համար հանգստյան օրերից բացի սահմանված է տարեկան արձակուրդ, աշխատավարձի պահպանմամբ։ Ամեն տարի միլիոնավոր սովետական քաղաքացիներ բուժվում և հանգստանում են մեր Միության առաջնակարգ սանատորիաներում ու հանգստյան տներում։ 1949 թվին միայն պրոֆմիութենական սանատորիաներում և հանգստյան տներում բուժվեցին և հանգստացան 2,1 միլիոն մարդ։

Ստալինյան Կոնստիտուցիան սովետական քաղաքացիներին պարգևել է նյութական ապահովության իրավունք՝ ծերության, ինչպես նաև հիվանդության և աշխատունակությունը կորցնելու դեպքում։ Այդ իրավունքն ապահովված է նրանով, որ սովետական պետությունը իր միջոցներից թոշակ է նշանակում բանվորներին ու ծառայողներին, ձրի բժշկական օգնություն է ցույց տալիս նրանց։ Պետությունը ծերության հասած բանվորներին ու ծառայողներին թոշակ է նշանակում ցմահ, անկախ նրանց մինչ այդ կատարած աշխատանքի բնույթից։ Սովետական յուրաքանչյուր բանվոր և գյուղացի ա-

ապահովագրված է պետության հաշվին։ Հետպատերազմյան հնգամյակի տարիներին սոցիալական ապահովագրության վրա կատարված ծախսերը կազմում են մի հսկայական գումար—61,6 միլիարդ ռուբլի։ Հայկական ՍՍՌ Սոցիալական ապահովության մինիստրության կողմից միայն 1949 թվին 31 միլիոն ռուբլի կենսաթոշակ է տրված աշխատունակությունը կորցրած բանվորներին և ծառայողներին։

Կոլխոզնիկ գյուղացիները ծերության հասակում, հիվանդության կամ աշխատունակությունը կորցնելու դեպքում իրենց կոլխոզից նյութական ապահովություն են ստանում Գյուղատնտեսական արտելի Կանոնադրության համաձայն։

Իսկ պետության կողմից ի՞նչպիսի օժանդակություն ստանալու մասին կարող են հուսալ կապիտալիստական երկրների աշխատավորները։ Աշխատունակությունը կորցրած, ծերության հասած բանվորը կապիտալի աշխարհում մատնված է սովամահության։ Բուրժուական պետությունների բյուջեներում աշխատավորների սոցիալական ապահովագրության համար ծախսեր չեն նախատեսվում։ Այնտեղ բանվորներն իրենք են մուծում իրենց ապահովագրության գումարները։



ԱՄՆ-ի բանվորները և գյուղացիները 1939—1946 թվերին ապահովագրության համար մուծեցին մոտ 4,3 միլիարդ դոլար, իսկ ստացան միայն 800 միլիոն դոլար։

ՍՍՌՄ Կոնստիտուցիան մեր երկրի բոլոր քաղաքացիների համար ապահովում է կրթության իրավունք։ Այդ իրավունքի կենսագործումը ապահովված է տարրական, յոթնամյա, միջնակարգ, մասնագիտական դպրոցների, տեխնիկումների և բարձրագույն ուսումնական հաստատությունների լայն ցանցի առկայությամբ։ Մեր երկիրը համատարած գրագիտության երկիր է։ 1949 թվի տարեվերջին տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում ու այլ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորում էր ավելի քան 36 միլիոն մարդ։ Մեր երկրի բարձրագույն ուսումնական հաստատություններում, ներառյալ նաև հեռակա ուսուցումը, սովորում է մեկ միլիոն 128 հազար մարդ, այսինքն ավելի, քան Եվրոպայի կապիտալիստական բոլոր երկրներում միասին վերցրած։ Սովետական Հայաստանի յուրաքանչյուր 4 մարդուց մեկը սովորում է։ Իսկ ԱՄՆ-ի ժողովրդական լուսավորության գործի դրվածքի մասին գաղափար կազմելու համար բավական է ասել, որ

կա 20 միլիոն անգրագետ, իսկ ավելի քան 6 միլիոն երեխա դպրոց չի հաճախում։

Ստալինյան Կոնստիտուցիան բոլոր քաղաքացիների համար ապահովում է քաղաքական իրավունքներ— խոսքի ազատության, մամուլի ազատության, ժողովների և միտինգների ազատության, փողոցային երթերի և ցույցերի, խղճի ազատության իրավունք։ Այդ իրավունքներից օգտվելու համար սովետական քաղաքացիներն իրենց տրամադրության տակ ունեն տպարաններ, թղթի ու ներկերի պաշարներ։ Թե ինչպիսի անսահմանափակ հնարավորություններ ունեն սովետական քաղաքացիներն իրենց քաղաքական իրավունքներից օգտվելու համար այդ ցայտուն կերպով երևում է մեր իշխանության ղեկավար օրգանների ընտրությունների ժամանակ։ Սովետական Միության աշխատավորները անարգել կերպով առաջադրում են իրենց թեկնածուներին, նրանց օգտին լայն ագիտացիա մղում մամուլի, ռադիոյի, ժողովների, միտինգների միջոցով, կազմակերպում են դեմոնստրացիաներ։ Մեր Կոնստիտուցիայով իշխանության ղեկավար օրգանների ընտրության համար սահմանված են ընդհա-



նուր, հավասար և ուղղակի ընտրություններ, գաղտնի քվեարկությամբ։ Ընտրությունների հենց այդ սիստեմը սովետական յուրաքան-չյուր քաղաքացու տալիս է բոլոր իրավունք-ներն ու հնարավորությունները իր քաղաքա-կան հայացքներն արտահայտելու համար։

Ստալինյան Կոնստիտուցիայով ՍՍՌՄ քաղաքացիների համար ապահովվում է անձի անձեռնմխելիություն, բնակարանի անձեռնմխելիություն, նամակագրության գաղտնիություն։

Սովետական քաղաքացիներն իրենց իրավունքների հետ միասին ունեն նաև սրբազան պարտականություններ։ Դրանք են՝ պահպանել Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիան, կատարել օրենքները, պահպանել աշխատանքային կարգապահությունը, ազնվորեն վերաբերվել դեպի հասարակական պարտքը, հարգել սոցիալիստական համակեցության կանոնները։

Սովետական քաղաքացու առաջին պատգամըն է՝ սրբությամբ պահպանել Սովետական Միության Կոնստիտուցիան, ինչպես նաև Միութենական ռեսպուբլիկաների Կոնստիտուցիաները։ Ստալինյան Կոնստիտուցիան, դա մեր օրենքների օրենքն է։ Նրա հիման վրա են

մշակվում և իրականացվում բոլոր օրենքները, այն օրենքները, որոնք ելնում են աշխատավորների կամքից և իրականացնում են նրանց կամքը։ Ով չի կատարում սովետական օրենքները, խախտում է դրանք, նա ժողովրդի կամքին դեմ է գնում, նա վնաս է հասցնում Սովետական պետության և սովետական հասարակության շահերին։

ՍՍՌՄ-ի յուրաքանչյուր քաղաքացի պարտավոր է պահպանել և ամրացնել հանրային սոցիալիստական սեփականությունը, որպես սովետական կարգի սրբազան և անձեռնմխելի հիմք, որպես Հայրենիքի հարստության և հզորության աղբյուր, որպես բոլոր աշխատավորների ունևոր և կուլտուրական կյանքի աղբյուր։

Սովետական հասարակության մեջ մարդիկ աշխատում են իրենց պետության համար, իրենց համար։ Աշխատանքը մեր երկրում դարձել է փառքի, պատվի և արիության գործ։ Ինչպես ասված է Կոնստիտուցիայում, «ՍՍՌՄ-ում աշխատանքը աշխատանքի ընդունակ յուրաքանչյուր քաղաքացու պարտականությունն է և պատվի գործն է՝ համաձայն «ով չի աշխատում, նա չի ուտում» սկզբունքի»։

Սովետական պետությունը բարձր է գնա-



հատում ազնիվ աշխատանքը և ամենուրեք քաջալերում է այն։ 1945 թվից մինչև 1949 թիվը ձեռք բերած հաջողությունների համար ՍՍՌՄ շքանշաններով և մեդալներով պարգևատրված են գյուղի և քաղաքի ավելի քան 510 հազար աշխատավորներ, արդյունաբերության և գյուղատնտեսության 4800 առաջավորների շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։

Զինվորական ծառայությունը բանվորա-գյուղացիական Բանակում ՍՍՌՄ-ի քաղաքացիների պատվավոր պարտականությունն է։ «Հայրենիքի պաշտպանությունը ՍՍՌՄ-ի յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է,»— ասված է մեր Կոնստիտուցիայում։

Մեր երկիրը եռանդուն կերպով նախապատրաստվում է ՍՍՌՄ Գերագույն Սովետի ընտրություններին։ Սովետական մարդիկ, իրենց մեծագույն իրավունքների գիտակցությամբ հպարտ, Լենինի-Ստալինի հարազատ պարտիայի շուրջը համախմբված 1950 թվի մարտի 12-ին ազատ ու անկախ կերպով կընտրեն իրենց հարազատ իշխանության գերագույն օրգանը՝ ՍՍՌՄ Գերագույն Սովետը։

Շ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Իրավաբանական գիտությունների թեկնածու

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ 32-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

(Նյութեր զրույցների համար)

*Այս տարվա փետրվարի 23-ին լրանում է Սովետական Հզոր տերության Զինված Ուժերի 32-րդ տարեդարձը։ Սովետական Բանակը ծնվել է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի բոցերում. նա իր գոյության 32 տարիների ընթացքում փառահեղ ու մարտական ուղի է անցել։*

*Սովետական ռեսպուբլիկայի ստեղծման հենց առաջին ամիսներին նրա դեմ երկրի ներքին կոնտրռևոլյուցիոն ուժերի հետ միասին զենք բարձրացրին նաև օտարերկրյա զավթիչները։ Արևմուտքից մեր երկիրն էին ներխուժում վիլհելմյան Գերմանիայի զորքերը։ «Անգլիայի, Ֆրանսիայի, Ճապոնիայի, Ամերիկայի իմպերիալիստները,— ասված է ՀամԿ(բ)Պ պատմության համառոտ դասընթացում,— ռազմական ինտերվենցիա սկսեցին առանց պատերազմ հայտարարելու, թեպետ ինտերվենցիան մի*



*պատերազմ էր ընդդեմ Ռուսաստանի, այն էլ վատթարագույն տիպի պատերազմ։ Այդ «քաղաքակիրթ» ավազակները ծածկաբար, գաղտագողի մոտեցան և իրենց զորքերն ափ հանեցին Ռուսաստանի տերիտորիայում»։*

*Նորաստեղծ երիտասարդ Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկային սպառնացող վտանգի դեմն առնելու, նրա շահերը ներքին և արտաքին թշնամիների ոտնձգություններից պաշտպանելու համար անհրաժեշտ էր ստեղծել բանվորներին և գյուղացիներին հավատարիմ բանակ, նոր տիպի բանակ, Կարմիր Բանակը։ Կարմիր Բանակի ստեղծողը, աշխարհում առաջին Կարմիր Բանակի, ազատագրված բանվորների ու գյուղացիների բանակի, մեր երկրի ժողովուրդների միջև եղբայրության բանակի, ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակված բանակի ստեղծողը եղել է բոլշևիկների պարտիան, Լենինի ու Ստալինի գլխավորությամբ,— ասված է Ի. Վ. Ստալինի համառոտ կենսագրության մեջ։*

*1918 թվի հունվարի 28-ին, Վլադիմիր Իլյիչ Լենինի ստորագրությամբ հրապարակվեց դեկրետ՝ Կարմիր Բանակ կազմակերպելու մասին։ Իր ստեղծման հենց առաջին օր-*

վանից Կարմիր Բանակը, պաշտպանելով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նվաճումները ներքին և արտաքին թշնամիների ոտնձգություններից՝ արդարացրեց մեր երկրի աշխատավորների, Լենինի և Ստալինի վստահությունը։

Կարմիր Բանակի երիտասարդ զորամասերը առաջին անգամ մտնելով պատերազմի մեջ, 1918 թվի փետրվարի 23-ին Պսկովի և Նարվայի մոտ գլխովին ջախջախեցին գերմանական զավթիչներին։ Այդ օրը դարձավ Սովետական Բանակի տոնի օր, որը տրադիցիոն կերպով ամեն տարի տոնում են մեր երկրի աշխատավորներն ու բոլոր երկրների ազատասեր մարդիկ։

Սովետական Բանակը դեռ նոր էր հաղթանակ տարել գերմանական զավթիչների դեմ, դեռ նոր էր ջախջախել Անտանտայի առաջին արշավանքը, որ երիտասարդ սովետական ռեսպուբլիկաների վրա հարձակվեցին 14 պետությունների բանակներ՝ Ամերիկայի, Անգլիայի, Ֆրանսիայի, Ճապոնիայի իմպերիալիստների ղեկավարությամբ։ Նրանց հետ դաշնակցել էին նաև մեր երկրի կոնտրռևոլյուցիոն սև ուժերը։ Երիտասարդ սովետական ռեսպուբլիկայի վրա կատարված զինված ինտերվենցիայի ոգեշնչողը



հանդիսանում էր Անգլիայի այն ժամանակվա ռազմական մինիստր, արյունռուշտ Չերչիլը։ Սովետների երկիրը գտնվում էր կրակե օղակի մեջ, 1918 թվի սկզբներին նրա երեք քառորդը զավթել էին օտարերկրյա ինտերվենտները։ Երիտասարդ սովետական ռեսպուբլիկան ժամանակավորապես կորցրել էր Ուկրաինան, Կովկասը, Միջին Ասիան, Ուրալը, Սիբիրը և Հեռավոր Արևելքը։ Հացը չէր բավարարում, չէր բավարարում նաև զենքը, պակասում էր հանդերձանքը։

Լենինի ու Ստալինի կոչով մեր երկրի աշխատավորները ոտքի ելան հայրենի երկիրը պաշտպանելու։

Մեծ Լենինը պատերազմի էր ոգեշնչում մեր երկրի աշխատավորներին ընդդեմ ինտերվենտների։ Ռազմաճակատի որ հատվածում որ վտանգն ավելի սպառնալի էր, Լենինն այնտեղ էր ուղարկում իր հավատարիմ զինակցին, Ստալինին։ Լենինը վստահ էր, որտեղ Ստալինը կա, այնտեղ ապահովված է հաղթանակը թշնամու դեմ։

Քաղաքացիական պատերազմի ամենածանր տարիներին ընկեր Ստալինը գտնվում էր Արևելյան ռազմաճակատում՝ Չերժինսկու հետ, Հարավ-Արևելքից սպառնացող վտանգի պահին ընկեր Ստալինը գտնվում էր Ցա-

րիցինում՝ Վորոշիլովի և Բուդյոննու հետ։ Պետրոգրադին սպառնացող վտանգի պահին ընկեր Ստալինին մենք տեսնում ենք այնտեղ։ «Ամենուրեք, որտեղ ռազմաճակատներում վճռվում էր ռևոլյուցիայի բախտը, պարտիան ուղարկում էր Ստալինին։ Նա է եղել կարևորագույն ստրատեգիական պլանների ստեղծողը։ Ստալինն է ղեկավարել վճռական մարտական օպերացիաները։ Ցարիցինի տակ և Պերմի մոտ, Պետրոգրադի մոտ և Դենիկինի դեմ, Արևմուտքում պանական Լեհաստանի դեմ և Հարավում՝ Վրանգելի դեմ— ամենուրեք Ստալինի երկաթյա կամքն ու ստրատեգիական հանճարը ապահովում էին ռևոլյուցիայի հաղթանակը» (Ի. Վ. Ստալին. Համառոտ կենսագրություն)։

Լենինի և Ստալինի ղեկավարությամբ Սովետական Բանակը քաղաքացիական պատերազմում փայլուն հաղթանակ տարավ, մեր երկրից դուրս վռնդեց օտարերկրյա ինտերվենտներին ու կոնտրռևոլյուցիոն բանդաներին։

Լենինի մահից հետո նրա գործը հավատարիմ կերպով շարունակող Մեծ Ստալինը, հատուկ հոգատարություն ցուցաբերելով Սովետական Զինված Ուժերի նկատմամբ, մրտահոգվեց նրա հրամանատարական կադրե-



րի աճեցման ու դաստիարակման, ժամանակակից ռազմական տեխնիկայով մեր բանակը սպառազինելու հարցով, որովհետև քանի դեռ գոյություն ունեն իմպերիալիստական գիշատիչ պետությունները, հետևաբար գոյություն ունի նաև մեր սոցիալիստական Հայրենիքի վրա ռազմական հարձակման վտանգը։ Հետևաբար, մեր Հայրենիքի ազատությունն ու անկախությունը պահպանելու համար անհրաժեշտ է հզոր և առաջնակարգ տեխնիկայով զինված բանակ։

ՍՍՌՄ-ի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ստալինյան քաղաքականության հաղթանակն է՛լ ավելի ամրապնդեց Սովետական Միության ռազմական և տնտեսական հզորությունը, բարձրացրեց նրա պաշտպանունակությունը։ Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի ու ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ մեր երկիրը նախապատրաստվեց ակտիվ պաշտպանության։

Սովետական Բանակի սպառազինությունը մինչև 1939 թվի վերջը— 1930 թվի համեմատությամբ աճեց. տանկերի գծով՝ 43 անգամ, ինքնաթիռների գծով՝ 6,5 անգամ, հրետանու գծով՝ 7 անգամ, տանկային և

հակատանկային հրետանու գծով՝ 70 անգամ, դնդացրի գծով՝ 5 անգամ։ Սպառազինության մեջ մտցվեցին ծանր հրանոթներ, զենիթային հրանոթներ և 82 միլիմետրանոց ականանետներ։

Սոցիալիստական ինդուստրացման ստալինյան կանոնների կիրառման շնորհիվ, Սովետական Միության Հայրենական Մեծ պատերազմի տարիներին մեր ռազմական արդյունաբերությունը կարողացավ Սովետական Զինված Ուժերին լիովին մատակարարել ռազմական տեխնիկա, ռազմապաշար, զինասարք, հանդերձանք և պարեն։ Այսպես օրինակ, պատերազմի վերջին երեք տարում մեր ռազմական արդյունաբերությունն արտադրեց 30 հազար տանկ և ինքնագնաց հրանոթ, 40 հազար ինքնաթիռ, 120 հազար հրանոթ, 100 հազար ականանետ, 450 հազար գնդացիր, 3 միլիոն հրացան և երկու միլիոն ավտոմատ։ Այդ տեխնիկայով սովետական ռազմիկները Հայրենական Մեծ պատերազմի տարիներին գերմանա-ֆաշիստական զավթիչների և ճապոնական սամուրայների դեմ մղած մարտերում ցուցաբերեցին անօրինակ արիություն և խիզախություն։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին Կարմիր Բանակն ու փառապանծ Կար-



միր Նավատորմը արիաբար պաշտպանում էին սովետական յուրաքանչյուր թիզ հողը և թշնամու գերակշռող ուժերի դեմ մղած անհավասար ճակատամարտերում հյուծում, արյունաքամ էին անում հիտլերյան բանակի զորամասերին։

1941 թվի աշնանը թշնամու առաջխաղացման ճանապարհը փակվեց Մոսկվայի պատերի տակ։ Հարազատ Մոսկվայի հերոսական պաշտպանությանը մասնակցում էին Սովետական Միության բոլոր ժողովուրդների զավակները։

Մեծագույն զորավար Ստալինի հանճարեղ պլանով Սովետական Զինված Ուժերը համառ պաշտպանությունից հետո, 1941 թվի ձմռանը հակահարձակման անցան և ուժեղ ջարդ տվին հիտլերյան հորդաներին։ Գերմանա-ֆաշիստական զավթիչները Մոսկվայից հետ մղվեցին 400—500 կիլոմետր հեռու։ Հիտլերյան զավթիչները Մոսկվայի տակ կորցրին 300 հազար զինվոր ու սպա։

1942 թվի ամռանը գերմանա-ֆաշիստական բանակները, վերսկսելով իրենց հարձակումը Հարավ-արևելյան ռազմաճակատի ուղղությամբ, փորձեցին հարավից շրջանցել Մոսկվան և հարկադրել Մոսկվային անձնատուր լինել։

Սովետական Զինված Ուժերը, գործելով մեր ժամանակի հանճարեղ զորավար ընկեր Ստալինի պլանով, տապալեցին Հիտլերի զառանցական այս պլանը ևս։

Ստալինգրադի անօրինակ պաշտպանությունից հետո 1942 թվի աշնանը մեր զորքերը անցան հակահարձակման։ Նրանք Ստալինգրադում շրջապատելով ֆաշիստական 330 հազարանոց բանակը, ոչնչացրին գերմանական 22 ընտիր դիվիզիա, գերի վերցրին մոտ 150 հազար ֆաշիստական զինվոր, 2500 սպա, 24 գեներալ։

Ստալինգրադի հարվածից հետո գերմանացիները այլևս չկարողացան ուշքի գալ։

1943 թվի հուլիսի 5-ին գերմանա-ֆաշիստական զավթիչները փորձ արին հարձակման անցնել Օրյոլ-Կուրսկ-Բելգորոդի շրջանում, ճեղքել Սովետական զորքերի պաշտպանության բնագիծը և առաջ շարժվել Մոսկվայի ուղղությամբ։ Սխալ դուրս եկան Հիտլերի նաև այդ հաշիվները։ Համառ և ակտիվ պաշտպանողական մարտեր մղելուց հետո Սովետական Զինված Ուժերը անցան հարձակման։ Ռազմաճակատի այդ հատվածում մեկ ամիս տևող արյունահեղ մարտերի ընթացքում Սովետական Բանակը հակառակորդին պատճառեց մեծ կորուստներ։ Թշնամին



տվեց՝ սպանված 120 հազար զինվոր և սպա, խփված և ոչնչացված՝ 4605 տանկ, 1623 հրանոթ, 11.000 ավտոմեքենա, ցած գցվեց 2.492 ինքնաթիռ։ Այդ նույն ժամանակ մեր զորքերը գրավեցին 521 տանկ, տարբեր տրամաչափի 875 հրանոթ, 2521 գնդացիր, 325 զանազան պահեստներ, գերի վերցրին հակառակորդի 12.418 զինվոր և սպա։

Եթե Ստալինգրադի տակ մղած ճակատամարտը,—ասում է ընկեր Ստալինը,—նշանակում էր գերմանական բանակի մայրամուտը, Կուրսկի մոտ կրած ջախջախումը նրան կանգնեցրեց կատաստրոֆի առաջ։

1943 թիվը արմատական բեկման տարի դարձավ պատերազմի ընթացքի մեջ հօգուտ Սովետական Զինված Ուժերի, որը իր մղած հաջող հարձակողական մարտերի ընթացքում բազմաթիվ հաղթանակներ ձեռք բերեց։

Ըստ որում թշնամու զորքերը ետ շպրտվեցին Վլադիկավկազից մինչև Խերսոն, Էլիստայից մինչև Կրիվոյ Ռոգ, Ստալինգրադից մինչև Գոմել, Վյազմայից ու Ռժևից մինչև Օրշայի և Վիտեբսկի տակ։ Տարվա ընթացքում ֆաշիստական բանակը կորցրեց 4 միլիոն զինվոր և սպա, որից ոչ պակաս 1 միլիոն 800 հազարը սպանված։ Դրանից բացի, գերմանացիները կորցրին 14 հազար ինքնա-

թիռ, ավելի քան 25 հազար տանկ և ոչ պակաս 40 հազար հրանոթ։

1944 թվականը եղավ Սովետական Բանակի վճռական հաղթանակների տարի։ Մեր Զինված Ուժերը, կենսագործելով ընկեր Ստալինի հանճարեղ ստրատեգիական պլանը, տասը հաջորդական հուժկու հարվածներ հասցրին գերմանական զորքերին։ Մարտերի ընթացքում Սովետական Բանակը գերմանա-ֆաշիստական զավթիչներին դուրս շպրտեց Սովետական Ուկրաինայի և Բելոռուսիայի, Կարելո-Ֆիննական, Մոլդավական, Էստոնական, Լատվիական և Լիտվական Սովետական Սոցիալիստական ռեսպուբլիկաների ամբողջ տերիտորիայից։ Սովետական զորքերը թշնամուց ազատագրելով մեր Հայրենի հողը, շարունակեցին իրենց հարձակողական մարտերը և ազատություն պարգևեցին Ռումինիայի, Բուլղարիայի, Հունգարիայի ժողովուրդներին, օգնության ձեռք մեկնեցին Լեհաստանի, Չեխոսլովակիայի և այլ ժողովուրդներին՝ հիտլերյան զավթիչների դեմ մղած պայքարում։ Ստալինյան տասը հարվածների շնորհիվ ջախջախվեցին և շարքից հանվեցին ֆաշիստական Գերմանիայի և նրա դաշնակիցների 120 դիվիզիա։

Սովետական Զինված Ուժերը, վերսկսելով



իրենց հարձակողական մարտերը, 1945 թվի հունվար-ապրիլ ամիսների ընթացքում լրիվ ազատագրեցին Լեհաստանը, Հունգարիան, Չեխոսլովակիայի մեծ մասը, Ավստրիայի զգալի մասը և նրա մայրաքաղաք Վիեննան։ Այդ նույն ժամանակ Կարմիր Բանակի զորամասերը գրավեցին Արևելյան Պրուսիան, Պոմերանիան, Բրանդենբուրգի մեծ մասը և միևնույն ժամանակ Բեռլինի գլխավոր շրջանները, բարձրացնելով հաղթանակի դրոշը Բեռլինի վրա։ Գերմանացիները կորցրին ավելի քան 800 հազար գերի ընկածներ և մոտ մեկ միլիոն սպանվածներ։ Այդ նույն ժամանակ Կարմիր Բանակը գրավել և ոչնչացրել է թշնամական մոտ 6000 ինքնաթիռ, մոտ 12.000 տանկ և ինքնաընթաց հրանոթ, ավելի քան 23 հազար դաշտային հրանոթ։

1945 թվի Մայիսի 2-ին ընկավ Բեռլինը։ Բեռլինի գրոհին մեր բանակի կողմից մասնակցում էին 41 հազար հրանոթ և ականանետ, 8.400 ինքնաթիռ և ավելի քան 6.300 տանկ։ Կրակի և մետաղի այդ հզոր փոթորկի մեջ ներծծված էր սովետական ժողովրդի մեծ ցասումը, նրա անդուսպ ուժը իր հայրենիքի պատվի, ազատության և անկախության համար մղած պայքարում։ Մայիսի 8-ին ֆա-

շիստական Գերմանիան անվերապահորեն կապիտուլացիայի ենթարկվեց։ Իսկ 1945 թվի սեպտեմբերի 3-ին պարտության մատնվեց միլիտարիստական Ճապոնիան։

Հայրենական պատերազմի տարիներին Կարմիր Բանակը հերոսությամբ դիմացավ պատերազմի բոլոր փորձություններին, գըլխովին ջախջախեց մեր թշնամիների բանակները և պատերազմից դուրս եկավ հաղթող։ Մեր հաղթանակը պայմանավորված էր սովետական հասարակարգի, սովետական պետական կարգի, Սովետական Զինված Ուժերի կենսունակությամբ, Մեծ Ստալինի հանճարով։

Սովետական Բանակը դարձավ մասսայական հերոսների բանակ։ Ավելի քան 7 միլիոն Սովետական զինվորներ, նավաստիներ, սպաներ և գեներալներ Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ պարգևատրվեցին ՍՍՌ Միության շքանշաններով և մեդալներով, 11 հազար սովետական ռազմիկներ արժանացան Սովետական Միության Հերոսի կոչման։

Հայրենական Մեծ պատերազմի տարիներին է՛լ ավելի աճեց ու ամրապնդվեց ՍՍՌՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։



Սովետական Միության ժողովուրդների զավակների հետ միասին Հայրենական պատերազմի ճակատներում արիաբար մարտնչում էին նաև հայ ժողովրդի քաջարի զավակները։

Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաղթանակող դուրս գալով թշնամիների դեմ մղած պատերազմում, այժմ իր ստեղծագործական աշխատանքով կառուցում է կոմունիզմ։

Սովետական կառավարությունը, ելնելով մեր ժողովրդի շահերից, բոլոր երկրների աշխատավորների շահերից, իր վարած ստալինյան արտաքին քաղաքականությամբ համառորեն պայքարում է ամբողջ աշխարհում կայուն խաղաղության համար։ Մինչդեռ անգլո-ամերիկյան ռեակցիոն շրջանները, նոր պատերազմի հրձիգները, տենդորեն նախապատրաստվում են երրորդ համաշխարհային պատերազմի, որը ուղղված է ՍՍՌ Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների դեմ։

Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարող շրջանները, ձգտելով բռնի կերպով հաստատել իրենց համաշխարհային տիրապետությունը, կիրառում են ագրեսիայի և նոր պատերազմի քաղաքականություն։ Նրանք,

դոլարի սարուկ դարձնելով բազմաթիվ երկրների ռեակցիոն ղեկավարների, ստեղծում են Հյուսիս-Ատլանտյան և այլ պակտեր։ Նրանք մի շարք երկրների տերիտորիաներում, հատկապես Մերձավոր Արևելքում— Թյուրքիայում, Իրաքում ու Իրանում պլացդարմներ են ստեղծում ընդդեմ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների։ ԱՄՆ-ի պետական բյուջեի 71 տոկոսը կլանում են ռազմական, նոր պատերազմի նախապատրաստության ծախսերը։

Իմպերիալիստական կլիկի դեմ կանգնած է ամբողջ աշխարհի առաջավոր, խաղաղասեր մարդկության հակաիմպերիալիստական ճակատը, որի ավանգարդը հանդիսանում է սովետական ժողովուրդը մեծ Ստալինի առաջնորդությամբ։

Սովետական Զինված Ուժերը արթուն կերպով պահպանում են մեր երկրի աշխատավորների խաղաղ, ստեղծագործական աշխատանքն ու ամբողջ աշխարհի խաղաղության շահերը։

—O—

# ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## I

## ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԻՆՔՆԱՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԱՌԱՋՄՂԻՉ ՈՒԺՆ Է

1. Աչանց դեմքերին նայելու համարձակ քննադատությունը և ինքնաքննադատությունը աշխատավորներին կոմունիզմի ոգով դաստիարակելու բոլշևիկյան մեթոդն է։

2. Անհանդուրժողականությունը աշխատանքում եղած թերությունների և սխալների նկատմամբ, բացարձակ և աղնիվ քննադատությունը և ինքնաքննադատությունը՝ պետական տնտեսական ապարատի ամրապնդման և բյուրոկրատիզմը արմատախիլ անելու հզոր միջոց է։

3. Աշխատանքում եղած թերությունների և սխալների պատճառների բացահայտումը և դրանք բոլշևիկորեն ուղղելը յուրաքանչյուր սովետական քաղաքացու պարտականությունն է։

4. Սովետական, պրոֆմիութենական և այլ հասարա-

*կական կազմակերպությունների աշխատանքներում ամենալայն մասսաների հետագա ընդգրկումը ժողովրդի նախաձեռնության և ակտիվության զարգացման կարևորագույն պայմանն է կոմունիզմի հաջող կառուցման գործում։*

*5. Արտադրական պլանների կատարման և գերակատարման համար մղվող պայքարում բոլոր ուժերի և միջոցների մոբիլիզացիան, համարձակ նորարարությունը, արտադրության ռացիոնալիզացիան՝ մասսաների կողմից գործնական, ռևոլյուցիոն ինքնաքննադատության վառ արտահայտությունն է։*

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Կենտրոնական Կոմիտեի քաղաքական հաշվետվությունը ՀամԿ(բ)Պ 15-րդ համագումարում: *Երկեր, 10-րդ հատ., էջ 369—378։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Կենտկոմի և ԿՎՀ ապրիլյան միացյալ պլենումի աշխատանքների մասին։ *Երկեր, 11-րդ հատ., էջ 32—44։*

Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ.— Ընկեր Ստալինը պրոգրեսիվ մարդկության առաջնորդն է: *Հայպետհրատ, 1950 թ.։*

Բոլշևիզմի եզոր զենքը.— *«Պրավդայի» 1950 թ. հունվարի 5-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.» 1950 թ. հունվարի 6-ի համարում։*



## II

## ՕՐԻՆԱԿԵԼԻՈՐԵՆ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՎԵԼ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻՆ, ԱՊԱՀՈՎԵԼ 1950 ԹՎԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԸ

*1. Նոր գյուղատնտեսական տարում ամրապնդել և բազմապատկել 1949 թվականի հաջողությունները։*

*2. Տրակտորների, կոմբայնների և մյուս գյուղատնտեսական մեքենաների ու գործիքների ժամանակին և գերազանց վերանորոգելը ՄՏ կայանների աշխատողների, կոլխոզների և սովխոզների աշխատողների կարևորագույն խնդիրն է։*

*3. Բարձրորակ սերմերի և պարարտանյութերի նախապատրաստելը, դաշտերում ձյունը կուտակելը գյուղատնտեսության աշխատողների անհետաձգելի խնդիրն է։*

*4. Ագրոտեխնիկական ուսուցում անցկացնելը և գյուղատնտեսության առաջավորների փորձի օգտագործումը 1950 թվականին բարձր բերք ստանալու կարևորագույն պայմանն է։*

*5. Ինչպես է ընթանում գարնանացանի նախապատրաստությունը մեր կոլխոզում, սովխոզում, մեքենատրակտորային կայանում։*

*6. Կոլտնտեսություններում, սովխոզներում, մեքենա-տրակտորային կայաններում, բրիգադաներում, օղակներում սոցիալիստական լայն մրցություն կազմակերպել գարնանացանի լավագույն կերպով նախապատրաստվելու համար։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Հետպատերազմյան ժամանակաշրջանում գյուղատնտեսության վերելքի միջոցառումների մասին։ Համ. Կ(բ)Պ Կենտկոմի 1947 թվի Փետրվարյան պլենումի որոշումը, ընդունված ընկ. Անդրեևի զեկուցման առթիվ։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետում և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեում։ Կոլխոզները սեփական սերմով ապահովելու մասին։ *«Ս. Հ.», 8 օգոստոսի 1947 թ.*

Դեպի սոցիալիստական գյուղատնտեսության նոր վերելք։ *«Ս. Հ.», 4 հունվարի 1950 թ., առաջնորդող։*


—○—

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

*Հայպետհրատի հրատարակությամբ առանձին բրոշյուրներով լույս են տեսել.*

Գ. Մալենկով.— *Ընկեր Ստալինը պրոգրեսիվ մարդկության առաջնորդն է։*

Վ. Մոլոտով.— *Ստալինը և ստալինյան ղեկավարությունը։*

Լ. Բերիա.— *Կոմունիզմի հաղթանակների մեծ ոգեշնչողն ու կազմակերպիչը։*

Կ. Վորոշիլով.— *Հայրենական Մեծ պատերազմի հանճարեղ զորավարը։*

Ա. Միկոյան.— *Կոմունիզմի մեծ ճարտարապետը։*

Լ. Կագանովիչ.— *Ստալինը մեզ տանում է դեպի կոմունիզմի հաղթանակը։*

Ն. Բուլգանին.— *Ստալինը և սովետական զինված ուժերը։*

Ա. Անդրեև.— *Ստալինը և կոլխոզային գյուղացիությունը։*

Ն. Խրուշչև.— *Ժողովուրդների ստալինյան բարեկամությունը մեր Հայրենիքի անպարտելիության գրավականն է։*

Ա. Կոսիգին.— *Մեր հաջողությունների համար մենք պարտական ենք մեծ Ստալինին։*

Ն. Շվերնիկ.— *Ընկեր Ստալինը Լենինի մեծ գործի շարունակողն է։*

*Յուրաքանչյուր բրոշյուրի գինն է 30 կոպեկ։*


Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

*ՎՖ 02115* *Պատվեր № 107* *Տիրաժ 9.300*

*Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

**БЛОКНОТ АГИТАТОРА**

№ 3 1950 г.